Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 15 ՀՈՒԼԻՍ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ՍՍՌՄ ՕԴԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

*Ամեն տարի մեր Հայրենիքի աշխատավորները մեծ ոգևորությամբ նշում են սովետական ավիացիայի Համամիութենական օրը, որ սահմանվեց 1933 թվականին և այդ ժամանակից դարձել է սովետական ժողովրդի սիրելի տոնը։ Այդ օրը սովետական ժողովուրդը նշում է ստալինյան ավիացիայի հաջողությունները, ցուցադրում է ավիացիոն տեխնիկայի փայլուն նվաճումները, մոբիլիզացիայի է ենթարկում իր ուժերը սոցիալիզմի երկրի Ռազմա-Օդային Նավատորմի և քաղաքացիական ավիացիայի հետագա ավելի բուռն զարգացման համար։*

*Սովետական պետության գոյության հենց առաջին օրերից Լենինը և Ստալինը մեծ ուշադրություն էին նվիրում մեր ավիացիայի ստեղծմանը։ Այդ գործում վճռական դեր*

խաղացին Ստալինյան հնգամյակները, որոնց ընթացքում Սովետական Միության մեջ ստեղծվեց առաջնակարգ ավիացիոն արդյունաբերություն և հզոր օդային նավատորմ։

Սովետական ավիացիայի զարգացման, նրա կադրերի աճման պատմությունն անմիջականորեն կապված է ընկեր Ստալինի անվան հետ։ Պատահական չէ, որ մեր ժողովուրդը սովետական օդաչուներին անվանում է ստալինյան բազեներ։ Մեր հըպարտ բազեները, ստալինյան հոգատարությամբ ոգեշնչված, ամբողջ աշխարհով մեկ տարածեցին սովետական ավիացիայի փառքը։ Նրանք կարմիր դրոշը ամրացրին Հյուսիսային բևեռի վրա, ավիացիայի պատմության մեջ նմանը չունեցող անվայրէջք թռիչքներ կատարեցին Մոսկվայից՝ Հյուսիսային բևեռի վրայով՝ Ամերիկա, Մոսկվայից մինչև Վլադիվոստոկ, Մոսկվայից Ամերիկա։

Բայց սովետական ավիացիայի հզորությունն իր ամբողջ փայլով դրսևորվեց Հայրենական Մեծ պատերազմում։

Սովետական ժողովուրդը Հայրենական պատերազմն ավարտեց պատմական մեծա-



գույն հաղթանակով։ Այդ հաղթանակը նըվաճելու գործում հսկայական դեր խաղաց մեր պանծալի ավիացիան։ Ընկեր Ստալինը բարձր է գնահատում մեր օդաչուների, մեր ավիացիայի հրամանատարական կազմի ծառայությունները Հայրենիքի ազատության և անկախության համար մղված պայքարում։ Ընկեր Ստալինը ասում է. «...մեր օդաչուները ցույց տվին անօրինակ խիզախություն, հերոսություն և արիություն, իսկ հրամանատարներն ու պետերը՝ հմտություն և ռազմական վարպետություն օդային օպերացիաների ղեկավարման գործում»։

Հայրենական պատերազմի ընթացքում մեր ավիացիան կատարում էր բազմազան խնդիրներ։ Զորքի այլ տեսակների հետ միասին, նա մահացու հարված հասցրեց թշնամուն։ Ֆաշիստական Գերմանիան, պատերազմ սկսելով սովետական ժողովրդի դեմ, հույս ուներ կայծակնային արագությամբ, մի քանի շաբաթվա ընթացքում պարտության մատնել մեր երկիրը, կործանել մեր ավիացիան։

Սակայն թշնամին սխալվեց իր հաշիվների մեջ։ Հայրենական պատերազմի հենց

սկզբից գերմանական ավիացիան զգաց սովետական ավիացիայի ուժը, նրա հզորությունը։ Մոսկվայի, Լենինգրադի, Օդեսայի, Սևաստոպոլի, Վորոնեժի, Ռոստովի, Կովկասի նախալեռներում սովետական ավիացիան հերոսաբար մարտնչում էր, հակահարված տալով գերմանական զինված ուժերին, ոչնչացնելով ֆաշիստական ավիացիան, որով պարծենում էր հակառակորդը։

Չտեսնված ծանր պայմաններում մեր ավիացիան խիզախորեն պաշտպանեց հերոս քաղաք Ստալինգրադը, որի համար մղված մարտերում անմահ փառքով պսակեցին իրենց անունները օդաչուներ Շեստակովը, Լավրինենկոն, Ալելյուխինը, Բարանովը և շատ ուրիշները։ Մեր Հայրենիքի պատմության մեջ նրանց անունները կհիշատակվեն որպես կրակոտ հայրենասերների, որոնք բարձր պահեցին սովետական ավիացիայի պատիվը, պայքարեցին Հայրենիքի ազատության և անկախության համար։

Սովետական ավիացիան, մեր հերոսական բանակի հետ միասին, Գեներալիսիմուս Ստալինի գլխավորությամբ Հայրե-



նական պատերազմում ամբողջ աշխարհին ցույց տվեց իր անխորտակելի հզորությունը։ Սովետական օդաչուներն իրենց ձեռքը վերցրին նախաձեռնությունը օդում, թշնամուն հասցրին կործանիչ հարվածներ։ Միայն 1942—1943 թ. թ. ձմեռային հարձակման ժամանակ գերմանական ավիացիան 4.000 ինքնաթիռի կորուստ ունեցավ։

1943 թվականի գարնանը Կուբանում տեղի ունեցած օդային մեծ մարտերում փայլուն կերպով դրսևորվեց սովետական ավիացիայի գերազանցությունը գերմանականի նկատմամբ։ Այդ մարտերում իրենց անունները փառքով պսակեցին Սովետական Միության եռակի հերոս Պոկրիշկինը, Սովետական Միության կրկնակի հերոսներ՝ Ռեչկալովը, Գուլաևը, Գլինկան և ուրիշներ։ Գերմանացիներն այնպիսի հարվածներ ստացան, որոնք նրանց տարան դեպի պարտություն։

Գերմանական ավիացիան նոր պարտություն կրեց Կուրսկի մարտերում, որտեղ գերմանացիները կորցրին 1.400 ինքնաթիռ. Պատերազմի առաջին երեք տարվա ընթացքում մեր ավիացիայի հարվածներով և մեր զորքերի կրակով ոչնչացվեց գերմանական

60 հազար ինքնաթիռ և մի քանի հարյուր հազար օդաչու։ Քյոնիգսբերգի շրջանում մղված մարտերի ժամանակ սովետական ավիացիան երկու օրվա ընթացքում կատարեց 10 հազար ինքնաթիռ-թռիչք, թշնամու ամրությունների վրա թափելով մոտ հինգ միլիոն կիլոգրամ ռումբ։

Սովետական ավիացիայի հերոսական պատմության մեջ նշանավոր էջեր են կազմում Օդերի շրջանում և Բեռլինի վրա մղված օդային մարտերը, որոնք կրկին անգամ ցույց տվին մեր ավիացիայի ուժն ու հզորությունը։ Բեռլինի վրա կատարված հարձակման հենց առաջին օրը մեր օդային ուժերը կատարեցին ավելի քան 17 հազար ինքնաթիռ-թռիչք, իսկ ամբողջ օպերացիայի ընթացքում՝ մոտ 70 հազար ինքնաթիռ-թռիչք։

Հեռավոր Արևելքում ճապոնական իմպերիալիզմի դեմ մղված մարտերում նույնպես, սովետական ավիացիան կարճ ժամանակում տիրապետություն նվաճեց օդում, ոչնչացրեց թշնամու կարևորագույն ստրատեգիական կետերի գրավմանը և կոմունիկացիաների ավերմանը, թշնամու թիկունքում իջեցրեց բազմաթիվ դեսանտներ։



Սովետական ժողովուրդը երբեք չի մոռանա մեր Հայրենիքի ազատության և անկախության համար հերոսաբար զոհված ռազմիկ-օդաչուներ՝ կապիտան Գաստելլոյին, որի անմահ օրինակով մարտնչում էին մեր խիզախ օդաչուները։ Անմահ կմնա հայ ժողովրդի պանծալի զավակ, Սովետական Միության կրկնակի Հերոս, փոխգնդապետ Նելսոն Ստեփանյանի անունը։ Նա ամբարտավան հարվածների վարպետ էր, նա իր բազեներին խիզախորեն առաջնորդում էր կատաղի գրոհմարտերի, ցույց տալով արիության ու անձնվիրության օրինակներ։

Ավիացիայի օրը սովետական մարդիկ հպարտությամբ են նշում օդային մարտերի հերոսների անունները։ Դրանց շարքում առաջինն են նշանավոր օդաչուներ, Սովետական Միության եռակի Հերոսներ գնդապետ Ալեքսանդր Պոկրիշկինը և մայոր Իվան Կոժեդուբը։

Պոկրիշկինը հանրածանոթ է մեր ժողովրդին։ Նա գերմանական ինքնաթիռների դեմ մասնակցել է 137 օդային մարտի, կատարել է 550 մարտական թռիչք, անձամբ ոչնչացրել է ֆաշիստական 59 ինքնաթիռ։ Կոժեդուբը մասնակցել է 120 օդային մար-

տերի, անձամբ խփել է գերմանական 62 ինքնաթիռ: Գերմանական վերջին ինքնաթիռը նա խփեց Բեռլինի վրա տեղի ունեցած օդային մարտերում:

Սովետական ժողովուրդը բարձր է գնահատում իր խիզախ բազեներին: Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում ավելի քան երկու հազար օդաչուների շնորհվեց Սովետական Միության Հերոսի բարձր կոչում: Ռազմա-օդային ուժերի 62 օդաչուի շնորհված է Սովետական Միության կրկնակի Հերոսի կոչում: Տասնյակ հազարավոր օդաչուներ իրենց քաջագործությունների համար պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով:

Մեր փառապանծ ավիացիան ստեղծել, նրա օդաչուներին աճեցրել ու դաստիարակել է ընկեր Ստալինը: Ստալինն է մշակել ռազմա-օդային ուժերի մարտական գործադրման հիմնական սկզբունքները: Հայրենական պատերազմում սովետական ավիացիան գործում էր Ստալինյան իմաստուն ցուցումներով ու սկզբունքներով և նա ցույց տվեց ավիացիայի գործադրման ստալինյան սկզբունքների բացառիկ ճշտությունը: Սովետական ավիացիան ընկեր Ստալինի գլխավորությամբ,



հաղթահարելով բոլոր դժվարությունները, Հայրենական պատերազմից դուրս եկավ է՛լ ավելի ուժեղ, նա միշտ պատրաստ է ծառայելու սովետական ժողովրդին, մեր սրբազան Հայրենիքին, նրա հետագա բարգավաճմանն ու զարգացմանը:

***

Սովետական երկիրը հաղթանակով դուրս գալով Հայրենական մեծ պատերազմից, արդեն երկրորդ տարին է, որ անցել է խաղաղ սոցիալիստական շինարարության գործին: Սովետական ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի գլխավորությամբ սոցիալիզմից աստիճանաբար անցնում է կոմունիզմին, իր ճանապարհին հաղթահարելով բոլոր դժվարությունները:

Սովետական երկրի բազմամիլիոն ժողովուրդն այս տարի Ավիացիայի օրը նշում է բացառիկ խանդավառությամբ: Նա այդ պանծալի տոնը նշում է Ստալինյան նոր հնգամյակի պլանների կատարման ու գերակատարման համար մղվող անդուլ պայքարի պայմաններում:

Սովետական ժողովուրդը տոնելով Ավիա-

ցիայի համամիութենական օրը, գիտե, որ մեր ավիացիայի առջև, սովետական զինված ուժերի առջև դրված են պատասխանատու խնդիրներ՝ «...աչալուրջ պահպանել նվաճված խաղաղությունը և սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքը, լինել Սովետական Միության շահերի հուսալի հենարանը» (Ստալին)։

Ստալինյան այդ իմաստուն ցուցումը կատարելու համար սովետական զինված ուժերն է՛լ ավելի են բարձրացնում և ամրապնդում իրենց մարտական ունակությունները ու հզորությունը։ Սովետական ավիացիոն գիտությունը և տեխնիկան, ինչպես Հայրենական պատերազմի ժամանակ, այնպես էլ հետպատերազմյան խաղաղ տարիներին, անընդհատ աճում և զարգանում են, է՛լ ավելի է ուժեղանում սովետական ավիացիայի մարտունակությունը։

ՍՍՌՄ-ը աշխարհում միակ սոցիալիստական պետությունն է, ժողովուրդների խաղաղության և անվտանգության հենարանը, դեմոկրատիայի ուժերի պատվարն ընդդեմ ռեակցիայի ուժերի։ Ահա՛ թե ինչու սովետական ավիացիան չի կարող հետ մնալ մյուս երկրների ավիացիայից։



Մեր ժողովրդի խաղաղության ու անվտանգության, ինչպես և մյուս խաղաղասեր ժողովուրդների շահերից ելնելով, սովետական ավիացիան պետք է լինի ուժեղ, սովետական ինքնաթիռները պետք է թռչեն բոլորից բարձր, բոլորից հեռու և բոլորից արագ։ Սովետական ժողովուրդը ցանկանում է իր ավիացիան տեսնել ավելի՛ ուժեղ, ավելի՛ հզոր ու առաջավոր, և նա ոչ մի ջանք ու միջոց չի խնայում այդ իրագործելու համար։ Սովետական ավիացիոն արդյունաբերությունն ունի բոլոր պայմաններն ու հնարավորությունները այսուհետև ևս կատարելու իր առջև դրված խնդիրները։

Մեծ և պատասխանատու է մեր երկրում քաղաքացիական ավիացիայի դերը։ Քաղաքացիական ավիացիան կապի զորեղ միջոց է, կուլտուրայի տարածման անգնահատելի միջոց։ Նա ներկայումս արդեն թափանցել է Սովետական Միության ամենահեռավոր անկյունները և մեծ ժողովրդականություն է վայելում։ Գործող օդային ուղիների ընդհանուր երկարությունը մեր Հայրենիքում հասնում է հարյուր հազարավոր կիլոմետրերի։

Հայրենական մեծ պատերազմի տարինե-
րին և խաղաղ աշխատանքի անցած երկու
տարվա ընթացքում է՛, ավելի աճեց ու ամ-
րացավ մեր ավիացիոն կոնստրուկտորների
ստեղծագործական կոլեկտիվը, որը հերո-
սաբար կատարում է մեծ Ստալինի կողմից
առաջադրված բոլոր խնդիրները։ Սովետա-
կան ժողովրդի պարծանքն են ավիացիոն
կոնստրուկտորներ՝ Ստալինյան մրցանակի
լաուրեատներ Յակովլևը, Իլյուշինը, Լավոչ-
կինը, Միկոյանը և բազմաթիվ այլ առաջա-
վոր կոնստրուկտորներ, որոնք հերոսաբար
աշխատում են հանուն մեր հայրենի ա-
վիացիայի զարգացման ու բարգավաճման։

Սովետական ավիացիան, որ իրեն փառ-
քով պսակեց Հայրենական Մեծ պատե-
րազմում, հետպատերազմյան ժամանակա-
շրջանի նոր պայմաններում պատվով կլու-
ծի այն խնդիրները, որ դնում է ավիացիա-
յի առջև մեծ առաջնորդ Ստալինը։

— ✻ —

# ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆՆԵՐԻ ՏՈՆԸ

(ՏԵՂԵԿԱՆՔ)

1935 թվականի հուլիսի 30-ին մեր պար-
տիայի և կառավարության ղեկավարները
Կրեմլում ընդունեցին Մոսկվայում տեղի
ունեցած երկաթուղային տրանսպորտի աշ-
խատողների խորհրդակցության մասնակ-
ցողներին։ Ընդունելությանը հանդես եկավ
ընկեր Ստալինը։

Ընկեր Ստալինն իր ճառում ասաց, որ եր-
կաթուղային տրանսպորտը վճռական նշա-
նակություն ունի այնպիսի մի հսկայական
երկրի համար, ինչպիսին մեր Սովետական
պետությունն է, որ նրա գոյությունն ու զար-
գացումն անհնարին է առանց կանոնավոր
գործող երկաթուղային տրանսպորտի, որը
կարողանա միմյանց հետ կապել մեր լայնա-
ծավալ Հայրենիքի բոլոր մարզերն ու ռես-
պուբլիկաները։

Ընկեր Ստալինն ասաց, որ յուրաքանչյուրի
համար մեծ պատիվ է աշխատել երկաթու-

ղային տրանսպորտում, նա խոսեց այն աշխատողների մասին, որոնք հասկացել են տրանսպորտի նշանակությունը և ջանք չեն խնայում նրա զարգացման ու կանոնավոր աշխատանքի համար։

Ընկեր Ստալինն ասաց, որ երկաթուղային տրանսպորտում կան բարձր պոստեր գրավողներ և ցածր պոստերում աշխատողներ, բայց չկան երկաթուղային տրանսպորտում ավելորդ կամ աննշան մարդիկ։ Սկսած ամենաբարձր ղեկավարներից մինչև «ամենափոքր» աշխատողները, ընդհուպ մինչև սլաքավարը, յուղողը, հավաքարարը,— բոլորն էլ երկաթուղային տրանսպորտում մեծ են, բոլորն էլ նշանավոր են, որովհետև տրանսպորտը մի կոնվեյեր է, որտեղ կարևոր է յուրաքանչյուրի աշխատանքը, որտեղ յուրաքանչյուր փոքրիկ պտուտակը իր դերն ունի։

Ընկեր Ստալինի ճառը երկաթուղայիններին ոգեշնչեց նորանոր մեծ գործերի համար, ոգեշնչեց պայքարելու Սոցիալիստական Հայրենիքի կանոնավոր գործող երկաթուղային տրանսպորտի համար։

Կրեմլում երկաթուղային տրանսպորտի լավագույն, առաջավոր մարդկանց ընդունե-



լությունը նշանավորելու նպատակով հուլիսի 30-ը հայտարարվեց երկաթուղային տրանսպորտի համամիութենական տոն։ Այդ օրը երկաթուղայինների բազմամիլիոն բանակը Հայրենիքին ռապորտ է տալիս, թե ի՞նչ է արված Առաջնորդի պատմական ցուցումը կատարելու համար, այն է՝ տրանսպորտը դարձնել «հստակ աշխատող, կանոնավոր գործող, ճշգրիտ կոնվեյեր, նման ժամացույցի լավ մեխանիզմին»։

Եվ երկաթուղային տրանսպորտն սկսեց անշեղորեն բարձրանալ։ Աճեց բեռնումը, արագացավ վագոնների շրջապտույտը, խիստ կրճատվեցին խորտակումներն ու ավարիաները, բարձրացավ կարգապահությունը։

ՍՍՌՄ-ը երկաթուղային մեծ տերություն է։ Երկաթուղիները մեր երկրի կենսատու երակներն են, որոնք միմյանց հետ կապում են ընդարձակ Սովետական Միության հարավային և հյուսիսային, արևմտյան ու արևելյան շրջանները, արդյունաբերական կենտրոնները, քաղաքներն ու գյուղերը, ապահովելով մեր մեծ Հայրենիքի տնտեսական և կուլտուրական բուռն զարգացումը։ Երկաթուղային տրանսպորտը մեր երկրի ժողովրդ-

դական տնտեսության կարևորագույն ու առաջատար ճյուղերից մեկն է, մեր Սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության կարևորագույն միջոց։

Գերմանա-ֆաշիստական զավթիչները հըսկայական վնաս հասցրին մեր երկաթուղիներին։ Օկուպացիայի ժամանակաշրջանում նրանք ավերեցին 65 հազար կիլոմետր երկաթուղի, քանդեցին հազարավոր կամուրջներ ու երկաթուղային կայաններ, ոչնչացրին հսկայական քանակությամբ շարժական կազմ՝ շոգեքարշեր ու վագոններ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը նախատեսում է «ապահովել ծանր արդյունաբերության և երկաթուղային տրանսպորտի առաջնահերթ վերականգնումն ու զարգացումը, առանց որոնց անհնարին է ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության արագ և հաջող վերականգնումն ու զարգացումը»։

Նոր հնգամյակում երկաթուղային տրանսպորտը զարգանալու է բացառիկ արագ տեմպերով։ Բացի վերականգնվող երկաթուղիներից, հնգամյակի ընթացքում շահագործման կհանձնվեն 7.230 կիլոմետր նոր երկա-



թուղիներ, կառուցվելու են 12.500 կիլոմետր երկրորդ ուղիներ, էլեկտրիֆիկացիայի է ենթարկվելու 5325 կիլոմետր երկաթուղի։ Երկաթուղային տրանսպորտը հնգամյակի ընթացքում կստանա 6.165 նոր շոգեքարշ, 555 էլեկտրաքարշ, 865 ջերմաքարշ և ավելի քան 472 հազար ապրանքատար վագոն։ Բեռնաշրջանառությունը երկաթուղիներում 1950 թվականին, հնգամյակի վերջին տարում, կկազմի 532 միլիարդ տոննա-կիլոմետր. այդ նշանակում է, որ հնգամյակի վերջում մեր երկրում օրական բեռնվելու է 115 հազար վագոն։

Սովետական երկիրն իր երկաթուղային տրանսպորտի տոնը այս տարի կնշի օգոստոսի 3-ին, կիրակի օրը։

Ժողովրդական տնտեսությունը մեծ խնդիրներ է առաջադրում երկաթուղային տրանսպորտին։ Երկաթուղային տրանսպորտի աշխատողների բազմամիլիոն բանակը, սերտ համախմբված բոլշևիկյան պարտիայի և մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը, ամրապնդում է տրանսպորտը, տարեց-տարի բարելավում է նրա աշխատանքը, և պատվով կկատարի իր առջև դրված խնդիրները։

— * —

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

# ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԻՆ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՊԱՏՎԻՐԱՆՆ Է

*Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը մեծ նշանակություն են տալիս հացի համար մղվող պայքարին։ Հացամթերումները ճիշտ և ժամանակին կատարել, կնշանակի ապահովել հացի պետական ֆոնդերը։ Հացամթերումը տնտեսական և քաղաքական նշանակություն ունեցող խոշոր պետական գործ է, կոլխոզների առաջին պատվիրանը։*

*Հաջողությամբ անցկացնել հացամթերումները, այդ կնշանակի հաջողությամբ պայքարել Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանները կատարելու համար, պայքարել ամբողջ երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման համար։*



Հացամթերումների հաջող անցկացումից են կախված մեր երկրի սոցիալիստական շինարարության հաջողությունները, երկրի պաշտպանունակության հետագա է՛լ ավելի ամրապնդումը, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացումը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշման մեջ նշված է. «...ապահովել, որ յուրաքանչյուր շրջան, յուրաքանչյուր կոլխոզ ու սովխոզ խստիվ պահպանի պարտադիր հանձնումների օրենքը և անպայման կատարի 1947 թվականի հացամթերումների պետական պլանը օրենքով սահմանված ժամկետին»։

Պլենումի որոշման մեջ նշված է նաև, որ անհրաժեշտ է հացամթերումները ծավալել բերքահավաքի հենց առաջին օրից և թույլ չտալ որ հացահատիկի հանձնման տեմպը հետ մնա կալսման տեմպից, կամ կալսումը ձգձգվի, որը անկասկած բացասաբար կանդրադառնա հացահատիկի մթերումների պլանը ժամանակին կատարելու վրա։ Անհրաժեշտ է կալսման հենց սկզբից հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլխոզ, յուրաքանչյուր սովխոզ ամեն օր մասնակցի

պետությանը հացահատիկ հանձնելու գործին, մինչև հացահատիկի հանձնման պլանը լրիվ կատարվելը։

Այս տարվա հացամթերումները հատուկ կարևորություն ունեն։ Խորապես գիտակցելով հացամթերումների կարևոր նշանակությունը, այս տարի Սովետական Հայաստանի կոլխոզները բերքահավաքի հենց առաջին օրից սկսեցին կատարել իրենց պարտավորությունները պետության հանդեպ։ Բերքահավաքն սկսած կոլխոզներն աշխատում են օր առաջ կատարել հացամթերումների պետական պլանները։

Բերիայի, Կոտայքի, Վեդու, Աշտարակի, Նոյեմբերյանի, Թալինի և Շամշադինի շրջանները գերակատարել են հացահատիկի հանձնման հուլիս ամսվա առաջադրանքը և այժմ, ուժեղացնելով հացահատիկի հանձնման տեմպը, աշխատում են մինչև օգոստոսի 1-ը լրիվ կատարել հացամթերումների պլանը։ Արտաշատի շրջանը Ռեսպուբլիկայում առաջինը հուլիսի 21-ին արդեն կատարեց հացամթերման պլանը։

Կոլխոզների կարմիր գումակների շարանը ամեն օր մթերակայաններն է բերում



հարյուրավոր տոննաներով հացահատիկ։ Կոլխոզնիկները կարմիր դրոշակներով, երգով և երաժշտությամբ են ուղեկցում գումակները։ Դա վառ արտահայտությունն է այն բանի, թե կոլխոզային գյուղացիությունն ինչպիսի բուռն խանդավառությամբ և նվիրվածությամբ է կատարում իր պարտավորությունները հարազատ պետության հանդեպ։

Աշտարակի շրջանի Թալիշի, Օշականի, Շահումյանի և Միկոյանի անվան, Եղվարդի ու Օհանավանի, Էջմիածնի շրջանի Վերին Ջեյվայի, Արագածի, Աղավնատան, Ղափանի շրջանի Ղարաչիմանի ու Սիղնակի և մի շարք այլ շրջանների առաջավոր կոլխոզներ հուլիսի առաջին տասնօրյակում ավարտեցին հացահատիկի հանձնման իրենց պարտավորությունների կատարումը, միաժամանակ կատարելով բնավարձի հանձնման պլանի զգալի մասը։

Դրանք պատկանում են Սովետական Հայաստանի այն առաջավոր կոլխոզների թվին, որոնք անցյալ տարվա հետ համեմատած, այս տարի ավելացրել են հացահատիկային կուլտուրաների ցանքերի տարա-

ծությունը, լավագույն կերպով են կազմակերպել ցանքերի մշակումը և աճեցրել են առատ բերք։

Այդ հաջողությունների արդյունք են այն բանի, որ հիշյալ կոլխոզները խստիվ պահպանել են հնձի, փոխադրումների, հասկահավաքման, կալսման, հացահատիկի զտման և պետական պարտավորությունների կատարման նախատեսված գրաֆիկը։

Բերքահավաքը պլանավորված և ըստ գրաֆիկի օրինակելիորեն կատարելու տեսակետից հիշատակման արժանի է Եղվարդի կոլխոզը, որի նախագահն է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկ. Հայկ Սարգսյանը։

Այդ կոլխոզները մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տված իրենց խոստումը կատարում են պատվով, է՛լ ավելի ծավալելով սոցիալիստական մրցությունը կոլխոզնիկների մեջ։

Բայց առաջավոր շրջանների ու կոլխոզների կողքին կան նաև հետ մնացողներ։ Ռեսպուբլիկայի կոլխոզները դեռ խոշոր աշխատանք ունեն պետության հանդեպ իրենց պարտավորությունները կա-



տարելու ասպարեզում մեծ Ստալինին տըրված խոստումը կենսագործելու համար։

Մի քանի օրից հետո Ռեսպուբլիկայի լեռնային շրջանները ևս կսկսեն մասսայական բերքահավաքը։ Նրանք առաջավորների օրինակով պետք է սրբությամբ կատարեն իրենց առաջին պատվիրանը հարազատ պետության հանդեպ։

Սովետական երկրի աշխատավորության ավելի շատ կենսամթերք և արդյունաբերությանը՝ հումք տալու նշանաբանով Ռեսպուբլիկայի կոլխոզները պետության հանդեպ ունեցած պարտավորությունները հաջողությամբ կատարում են նաև մյուս մթերումների գծով։

Մթերումների առաջին կիսամյակի պլաններն զգալիորեն գերակատարված են, և երկրորդ կիսամյակի պլանների հաշվին կոլխոզներն արդեն հանձնել են պետությանը 7.129 ցենտներ միս, 28 հազար լիտրից ավելի կաթ և այլ մթերքներ։

Կարմիրի շրջանի կոլխոզներն առաջին կիսամյակում լրիվ ավարտեցին մսի և կաթի պետական պարտավորությունների կատարման պլանները։ Իսկ Ղափանի, Աղի-

նի, Ալագյազի. Դիլիջանի, Ղարաբաղլարի, Մեղրու և Շամշադնի շրջանների կոլխոզները կատարել են կաթի տարեկան հանձնումների պլանը։

Չկա ավելի պատվավոր ու վեհ խնդիր գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների համար, քան բերքահավաքը հաջող կազմակերպելը, պետական պարտավորությունները ժամանակին կատարելը Առաջնորդին տված խոստումը կենսագործելու համար։

Հ. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ

ՍՍՌՄ Մթերումների Մինիստրության Հայկական ՍՍՌ լիազոր

---

## ԿՈԼԽՈԶՆԻԿՆԵՐԻ ԼՐԱՑՈՒՑԻՉ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ստալինյան Կոնստիտուցիայում սոցիալիզմի ժամանակվա բաշխման կարգի մասին ասված է. «ՍՍՌՄ-ում իրականացվում է սոցիալիզմի սկզբունքը— «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակության, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի»։ Աշխատանքը յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է— «ով չի աշխատում, նա չի ուտում»։

Ստալինյան Կոնստիտուցիան մեր կյանքի հիմնական օրենքն է, և օրենքով նախատեսված այդ սկզբունքը խոշոր նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացման համար. արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Այդ սկզբունքը յուրաքանչյուր աշխատողի մեջ բարձրացնում է համաժողովրդական շահերի

դիտակցումը, նյութական շահագրգռվածություն է առաջացնում իր աշխատանքի բնագավառում տալու ավելի շատ արտադրանք, ուժեղ հարված է հասցնում ծրիակերներին ու լոդրերին։

Բոլշևիկների պարտիան և սովետական կառավարությունը հսկայական ուշադրություն են դարձնում վարձատրման այդ սկզբունքի անշեղ կենսագործմանը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումը «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» իր որոշման մեջ նշում է. «Կոլխոզներում եկամուտների բաշխումը կատարել. հաշվի առնելով բրիգադայի հավաքած բերքը, իսկ բրիգադներում՝ օղակի հավաքած բերքը, այն հաշվով, որ ավելի բարձր բերք ստացած բրիգադների և օղակների կոլխոզնիկները համապատասխանորեն ստանան նաև ավելի բարձր վարձատրություն, իսկ ավելի ցածր բերք ստացած բրիգադների և օղակների կոլխոզնիկներն իրենց աշխատանքի համար ստանան պակաս վարձատրություն»։

Կոլխոզներում աշխատանքի արտադրողականության բարձրացման, բերքատվու-



թյան աճման և անասնաբուծության մթերատվությունն ավելացնելու գործում մեծ նշանակություն ունի բերքատվության և մթերատվության պլանային առաջադրանքները գերակատարելու համար կոլխոզնիկներին լրացուցիչ վարձատրություն տալու վերաբերյալ օրենքը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌ Միության Ժողկոմսովետի 1941 թվականի մարտի 13-ի որոշման համաձայն, եթե բրիգադան, օղակը իրենց ամրացված հացահատիկային կուլտուրաների ամբողջ տարածությունից ստացել են ավելի բերք, քան նախատեսված է պլանով, ապա բրիգադային, օղակին տրվում է լրացուցիչ վարձատրություն՝ պլանից ավել ստացած հացահատիկի մեկ երրորդի չափով։

Եթե օղակը իրեն ամրացված ամբողջ ցանքատարածության վրա գերակատարել է կարտոֆիլի բերքատվության պլանը, ապա օղակի անդամներն իբրև լրացուցիչ վարձատրություն, ստանում են քառորդ մասն այն բերքի, որ հավաքել է օղակը սահմանված պլանից ավելի։ Բանջարաբոստանային կուլտուրաների մշակման ասպարեզում, որպես լրացուցիչ վարձատրություն տրվում է պլա-

նից ավելի ստացված բերքի մեկ հինգերորդ մասը։

Համաձայն այդ որոշման, բամբակի, շաքարի ճակնդեղի և ծխախոտի բերքատվության պլանային առաջադրանքը գերակատարելու համար կոլխոզնիկներին լրացուցիչ վարձատրություն է տրվում դրամով։ Լրացուցիչ վարձատրություն տրվում է մի շարք այլ կուլտուրաների գծով, ինչպես նաև անասնապահության ասպարեզում աշխատող կոլխոզնիկներին՝ մթերատվության պլանները գերակատարելու, անասունների գլխաքանակն ավելացնելու և մատղաշի պահպանման համար։

Բերքատվության ու մթերատվության պլանային առաջադրանքները գերակատարելու համար լրացուցիչ վարձատրություն ստանում են բրիգադային կամ օղակին մըշտապես ամրացված այն կոլխոզնիկները, որոնք կատարել են ամբողջ տարվա համար սահմանված աշխօրերի պարտադիր մինիմումը։

Պարտիայի և կառավարության որոշումը՝ կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրության վերաբերյալ, մեծ խանդավառությամբ ընդունվեց կոլխոզնիկների



կողմից և խոշոր նշանակություն ունեցավ բերքատվության բարձրացման, անասունների պահպանման և նրանց մթերատվության աճման գործում։ Զգալի թվով կոլխոզնիկներ ստացել են լրացուցիչ վարձատրություն։

Անցյալ տարի Հայաստանի կոլխոզներում բերքատվության և մթերատվության պլանային առաջադրանքները գերակատարելու համար 36 հազար 596 կոլխոզնիկներ իբրև լրացուցիչ վարձատրություն ստացան 6.195 ցենտներ հացահատիկ, 11 հազար 941 ցենտներ կարտոֆիլ, 269 հորթ, 824 գառ, 61 հազար 181 կիլոգրամ կաթնամթերք, 2 միլիոն 952 հազար ռուբլի դրամ։

Լրացուցիչ վարձատրության չափերով անցյալ տարի առանձնապես աչքի ընկան Շամշադինի, Ստեփանավանի, Աղինի, Թալինի, Նոր-Բայազետի և մի շարք այլ շրջանների կոլխոզները։

Ահա մի քանի ցայտուն օրինակներ. Շամշադինի կոլխոզնիկներին իբրև լրացուցիչ վարձատրություն տրվեց 6.108 ցենտներ կարտոֆիլ, 709 հազար 850 ռուբլի դրամ։ Թալինի շրջանում կոլխոզնիկներն իբրև լրացուցիչ վարձատրություն ստացան 558 ցենտներ հացահատիկ, 77 հազար 895 ռուբլի

դրամ և մի շարք այլ մթերքներ, նաև մատղաշ անասուն։

Թալինի շրջանի Ջիթհանքով գյուղի կոլխոզնիկուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանն անցյալ տարի բերքատվության պլանային առաջադրանքը գերակատարելու համար, որպես լրացուցիչ վարձատրություն ստացավ 393 կիլոգրամ ցորեն։

Նոր-Բայազետի շրջանի Հացառատ գյուղի «Կարմիր Հոկտեմբեր» կոլխոզում լրացուցիչ վարձատրություն ստացան 528 հոգի։ Ստեփանավանի շրջանի Կուրթան գյուղի Միկոյանի անվան կոլխոզի 6-րդ բրիգադայի 5-րդ օղակի 12 կոլխոզնիկներ իբրև լրացուցիչ վարձատրություն ստացան 4746 կիլոգրամ կարտոֆիլ, ընտորում օղակի անդամ Համիկ Խանումյանն ստացավ 833 կիլոգրամ կարտոֆիլ։ Այդ նույն կոլխոզի 5-րդ բրիգադայի 2-րդ օղակի անդամ Աղավնի Սմբոյանն ստացավ 745 կիլոգրամ կարտոֆիլ և այլն։

Այս օրինակները ցույց են տալիս, որ լավ աշխատող կոլխոզնիկները լավ էլ վարձատրվում են։

Կոլխոզնիկների լրացուցիչ վարձատրությունն առաջին հերթին պահանջում է ստույգ



և ճշգրիտ հաշվառում գյուղատնտեսական բոլոր աշխատանքներում, մանավանդ այժմ, բերքահավաքի ժամանակ։

Շատ կարևոր է կոլխոզնիկների վաստակած աշխօրերի հաշվառումն ըստ կուլտուրաների, ինչպես և բրիգադաներին ու օղակներին ամրացված ցանքատարածություններից ստացված բերքի առանձին հաշվառումը։ Այն կոլխոզներում, որտեղ բրիգադաների, օղակների ստացած բերքի առանձին հաշվառումը վատ վիճակում է, այնտեղ կոլխոզնիկները հնարավորություն չեն ունենա լրացուցիչ վարձատրություն ստանալու, իսկ որտեղ լավ է կազմակերպված հաշվառումը, կոլխոզնիկները պլանային առաջադրանքները գերակատարելու դեպքում կստանան լրացուցիչ վարձատրություն ու ավելի շահագրգռվածություն կստեղծվի բարձր բերք ստանալու, անասունների մթերատվությունը բարձրացնելու համար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ գյուղատնտեսության առաջավորներին ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին, համաժողովրդական լայն շարժում է առաջացրել բարձր բերք ստանալու համար։ Հրամանա-

դրի ճիշտ կիրառումը պահանջում է ամեն մի բրիգադայի, օղակի, ֆերմայի և առանձին կոլտնտեսականի կատարած աշխատանքի և ստացած արդյունքի ճիշտ հաշվառում։

Բերքի հաշվառումն ըստ բրիգադաների և օղակների ապահովելու համար, պետք է հնձված հացահատիկը փոխադրել և դիզել առանձին, ըստ բրիգադաների, իսկ որտեղ ցանքադաշտն օղակին է ամրացված, նաև՝ ըստ օղակների։ Լրացուցիչ վարձատրությունը ճիշտ կիրառելու համար կարևոր է, որ ստացված բերքը կալսվի առանձին, մուտք արվի առանձին, որպեսզի պարզ լինի, թե ամեն մի բրիգադա, օղակ, իրեն ամրացված ցանքատարածությունից որքան բերք է ստացել, և որպեսզի դրա հիման վրա էլ կատարվի լրացուցիչ վարձատրության հաշվարկը։

Անցյալ տարի մի շարք կոլտնտեսություններում հացահատիկը մուտք անելու մասին բեռնագրերը կազմում էին ոչ թե շահագրգռված անձի՝ բրիգադիրի, օղակավարի միջոցով, այլ կողմնակի մարդկանց՝ կալապետի, կշռավարի, որով չէր ապահովվում բերքի առանձին հաշվառումն ըստ բրիգադաների և օղակների։ Բացի դրանից, մի շարք կոլ-



տնտեսություններում մթերակայաններ ուղարկվող հացահատիկն առանց կոլխոզի պահեստում մուտք անելու և հաշվապահորեն ձևակերպելու, անմիջականորեն կոլխոզի կալից ուղարկում էին մթերակայանները, որի հետևանքով հնարավոր չէր լինում ճիշտ կատարել բրիգադաների ստացած բերքի հաշվառումը, և, բացի դրանից, տեղիք էր տրվում հացահատիկի չարաշահումների ու հափշտակումների։

Կոմբայնային բերքահավաքի ժամանակ նույնպես պետք է բրիգադաներին, օղակներին ամրացված ցանքատարածության բերքը հավաքել առանձին, որպեսզի ստացված բերքը չխառնվի։ ՄՏ կայանների մեխանիզատորական կադրերը՝ տրակտորիստները, կոմբայնավարները, տրակտորային բրիգադաների բրիգադիրներն իրենք ևս շահագրգռված են տրակտորային բրիգադաների կողմից մշակված տարածություններից ստացվող բերքի առանձին և ճիշտ հաշվառումով, քանի որ նրանք նույնպես, կոլխոզների դաշտավարական բրիգադաների կամ օղակների անդամների նման լրացուցիչ

վարձատրություն են ստանում իրենց մշակած տարածություններից։

Կոլխոզնիկների լրացուցիչ վարձատրության անշեղ կիրառումն ուժեղ խթան կհանդիսանա գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը բարձրացնելու, մեր երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։

Ս. ՓԱՅՏՅԱՆ
ՀՍՍՌ Գյուղատնտեսության Մինիստրության Կոլխոզ Կազմբաժնի պետ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ 1947 ԹՎԱԿԱՆԻ ԵՐԿՐՈՐԴ ԵՌԱՄՍՅԱԿՈՒՄ

Սովետական Հայաստանի աշխատավորները բուռն խանդավառությամբ կենսագործում են Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանը, որը ՍՍՌՄ հետպատերազմյան Ստալինյան հնգամյա պլանի բաղկացուցիչ մասն է կազմում։

Հայկական ՍՍՌ հնգամյա պլանով ռեսպուբլիկական և տեղական արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականին կազմելու է 700 միլիոն ռուբլի, որը 1940 թվականի համեմատությամբ տալիս է աճ 2,3 անգամ։ Այդ նշանակում է, որ Սովետական Հայաստանի արդյունաբերությու-

նը նոր հնգամյակում չտեսնված վերելք է ապրելու: Ընդարձակվում և իրենց արտադրանքն ավելացնում են հին գործարաններն ու ֆաբրիկաները, կառուցվում են նորերը:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլուցիայի 30-րդ տարեդարձի պատվին Ռեսպուբլիկայում լայնորեն ծավալված սոցիալիստական մրցումը մեծ թափ է հաղորդել նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանների կատարմանը: Այս տարվա ինչպես առաջին եռամսյակի, նույնպես և երկրորդ եռամսյակի պլանների կատարումն այդ է վկայում:

Երկրորդ եռամսյակի պլանները Ռեսպուբլիկայում լավ ցուցանիշներով կատարել ու գերակատարել են միութենական ենթակա ձեռնարկությունները: Այսպես օրինակ՝ գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները երկրորդ եռամսյակի պլանը կատարել են 124 տոկոսով, էլեկտրակայանները՝ 117 տոկոսով, քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները՝ 110 տոկոսով, Կաբելի գործարանը՝ 120 տոկոսով, Դազգահաշինական գործարանը՝ 117 տոկոսով, Կոշիկի ֆաբրիկան՝ 156 տոկոսով, և այլն:



1946 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, 1947 թվականի երկրորդ եռամսյակում իրենց արտադրանքն ավելացրել են— գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները՝ 13 տոկոսով, էլեկտրակայանները՝ 20 տոկոսով, քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները՝ 10 տոկոսով, ռետինի արդյունաբերության ձեռնարկությունները՝ 40 տոկոսով, Կաբելի գործարանը՝ 350 տոկոսով, ավտոմոբիլի մասեր արտադրող գործարանը՝ 48 տոկոսով, Դազգահաշինական գործարանն իր արտադրանքն ավելացրել է 34 տոկոսով, և այլն:

Միութենական-ռեսպուբլիկական և ռեսպուբլիկական ձեռնարկությունների մեծ մասը նույնպես կատարել ու գերակատարել են իրենց պլանները: Պլանները գերակատարել և անցյալ տարվա երկրորդ եռամսյակի համեմատությամբ իրենց արտադրանքն ավելացրել են— տեղական արդյունաբերության ձեռնարկությունները՝ 64 տոկոսով, շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունները՝ 81 տոկոսով, հացի արդյունաբերության ձեռնարկությունները՝ 26 տո-

կոսով, արհեստագործական կոոպերացիան 20 տոկոսով, և այլն։

Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ ավտոդողեր և սուպերֆոսֆատ արտադրվել է մոտ երկու անգամ ավելի, ավելի են արտադրվել— գազգահներ՝ 71 հատ, ցեմենտ՝ 11 հազար տոննա, պատուհանի ապակի՝ 16,4 հազար քառակուսի մետր, շինաքար՝ 25 հազար խորանարդ մետր, բամբակեղեն գործվածք մոտ 246 հազար մետր, գուլպա՝ 809 հազար զույգ, մահճակալ՝ 5.744 հատ, կենդանական յուղ՝ 65 տոկոսով ավելի, պանիր՝ 30,8 տոկոսով, կոշիկի կաշի՝ 78 տոննա ավելի և այլն։

Ռեսպուբլիկայում արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը 1947 թվականի երկրորդ եռամսյակում կատարված է 114 տոկոսով, որը 1946 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ տալիս է աճ՝ 23 տոկոս։

Երկրորդ եռամսյակում հատկապես լավ են աշխատել գունավոր մետալուրգիայի բոլոր գործող ձեռնարկությունները, էլեկտրակայանները, Ալավերդու և Կիրովականի քիմիական գործարանները, Կաբելի, Ձերժինսկու անվան դազգահաշինական, Ավտո-



դետալի, Ժամացույցի, Ցեմենտի գործարանները և այլն։

Երկրորդ եռամսյակում Ռեսպուբլիկայի արդյունաբերության ձեռնարկությունները յուրացրել են արտադրանքի հետևյալ նոր տեսակները՝ «ՏՄ—180» ուժային տրանսֆորմատորներ, 16 քառակուսի միլիմետրից բարձր ՊՐ էլեկտրալար և շլանգալար։

Խոշոր աշխատանք է կատարվել նաև գյուղատնտեսության բնագավառում։ Գարնանացանի պլանը գերակատարված է բոլոր կուլտուրաների գծով։ 1946 թվականի համեմատությամբ ցանքատարածությունը 1947 թվականին ավելացել է 13 հազար հեկտարով, տրակտորային աշխատանքների կատարումն ավելացել է 11 տոկոսով, ցելի պլանը կատարված է 109 տոկոսով։

Անասունների գլխաքանակի աճը կոլխոզներում 1947 թվականի երկրորդ եռամսյակի վերջին, 1946 թվականի նույն ժամանակի համեմատությամբ կազմում է— խոշոր եղջերավոր անասուններինը՝ 3,9 տոկոս, ոչխարներինը և այծերինը՝ 12,2 տոկոս, ձիերինը՝ 12,8 տոկոս, խոզերինը՝ 17,1 տոկոս։

Ռեսպուբլիկայում կապիտալ աշխատանք-

ների պլանը առաջին կիսամյակում կատարվել է տարեկան պլանի 33 տոկոսի չափով, որը 1946 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ կազմում է 122 տոկոս։

Արդյունաբերության մեջ 1947 թվականի երկրորդ եռամսյակում, 1946 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, բանվորների թիվը ավելացել է 11 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը նույն ժամանակամիջոցում արդյունաբերական ձեռնարկություններում աճել է 9,5 տոկոսով։ Աշխատավարձի ֆոնդը 1946 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ 1947 թվականի երկրորդ եռամսյակում ավելացել է 45 տոկոսով։

Ռեսպուբլիկայում սոցիալիստական մրցությունը գնալով ավելի ու ավելի լայն ծավալ է ընդունում։ Դա երաշխիք է այն բանի, որ ձեռնարկությունների մեծ մասը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակի օրը՝ նոյեմբերի 7-ին ռապորտ կտան երկրին և մեծ Ստալինին, որ իրենք կատարել ու գերակատարել են տարեկան պլանները։

— * —



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵԽԱՆԻԶԱՑԻԱՆ

Լենին-Ստալինի պարտիայի ազգային քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ, Սովետական Հայաստանի աշխատավորները հսկայական նվաճումներ են ձեռք բերել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանն ավելի լայն հեռանկարներ է բաց անում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության առջև։ Հայկական ՍՍՌ ամբողջ գյուղատնտեսության արտադրանքի աճը հնգամյակի վերջում 1940 թվականի համեմատությամբ կազմելու է 75 տոկոս։

Գյուղատնտեսության վերելքն ապահովելու տեսակետից խոշոր նշանակություն ունի գյուղատնտեսության մեխանիզացիան, որը

հեշտացնելով ձեռքի աշխատանքը, միևնույն ժամանակ լուրջ դեր է խաղում գյուղատնտեսական կուլտուրաների համախառն արտադըրանքն ավելացնելու գործում։ «Աշխատանքի պրոցեսների մեխանիզացիան,— ասում է ընկեր Ստալինը,— այն... վճռական ուժն է, առանց որի հնարավոր չէ ապահովել ոչ մեր տեմպերը, ոչ էլ արտադրության նոր մասշտաբները»։

Գյուղատնտեսության մեխանիզացիայի պլանը նախատեսում է առաջին հերթին մեծ չափերով ավելացնել և ուժեղացնել մեքենատրակտորային կայաններում գյուղատնտեսական բարդ մեքենաների պարկը։

Նոր հնգամյակում Ռեսպուբլիկայում զգալիորեն կաճի տրակտորների քանակը։ Հին սիստեմի տրակտորները կփոխարինվեն նոր, ավելի կատարելագործված տրակտորներով, ըստ որում ավելանալու է «ՍՏԶ—3» տրակտորների քանակը և 1950 թվականին հասնելու է 350-ի, «Ունիվերսալ 1 և 2» տրակտորների քանակը հասնելու է 200-ի։ Սովետական Հայաստանի դաշտերում 1950 թվականին կգործեն 1700 տրակտոր։

Տրակտորների հետ միասին զգալիորեն ավելանում է նաև գյուղատնտեսական մյուս



բարդ մեքենաների թիվը։ 1950 թվականին Ռեսպուբլիկայի դաշտերում կգործեն 222 կոմբայն։

Կոմբայնը կոլխոզնիկներին ոչ միայն ազատում է ձեռքի ծանր աշխատանքից, այլև զգալիորեն արագացնում է բերքահավաքը, հացահատիկի կորուստը հասցնում է նվազագույնի։

Կալսիչ մեքենաների քանակը 1950 թվականին հասնելու է 400-ի, «ՎԻՄ—2» սերմզըտիչ մեքենաներինը՝ 40-ի։ Դրանք կատարելագործված սերմազտիչներ են, որ Հայաստանն ստանում է առաջին անգամ։ Ավելանալու են տրակտորային գութանները, բազմախոփ գութանները, «ՌԻՏԻ» սիստեմի կուլտիվատորները, ճակնդեղի, բամբակի կուլտիվատորների, հացահատիկային շարքացան մեքենաների պարկը։ Ստացվելու են բամբակի կնգուղ և ծղոտ հավաքող 80 հատ մեքենա, որոնցից Ռեսպուբլիկան չի ունեցել առաջներում։ Ավելանալու է բամբակի շարքացան մեքենաների քանակը և հասցըվելու է 180-ի, ճակնդեղի շարքացաններինը՝ 30-ի, ճակնդեղահան մեքենաներինը՝ 50-ի և այլն։

Ստալինյան նոր հնգամյակում մեծ ուշա-

դրություն է դարձվում հատկապես տեխնիկական կուլտուրաների մշակության մեխանիզացիային։ Սովետական Հայաստանում սոցիալիստական գյուղատնտեսության մեջ են մտցվում նոր մեքենաներ բամբակի, ճակնդեղի և մյուս տեխնիկական կուլտուրաների մշակման համար։ Բամբակի մշակման մեխանիզացիան հետևյալ պատկերն է ունենալու. եթե 1940 թվականին բամբակի դաշտերի վարնանավարը մեխանիզացիայի էր ենթարկված 70 տոկոսով, ապա 1950 թվականին մեխանիզացիայի կենթարկվի 95 տոկոսով, նախացանքային մշակությունը՝ 70 տոկոսով, բամբակի ցանքը՝ 85 տոկոսով, ցրտահերկը՝ 95 տոկոսով։ Պայքարը բամբակի վնասատուների դեմ հնգամյակի վերջում մեխանիզացիայի կենթարկվի 50 տոկոսով։

Մեխանիզացիայի է ենթարկվելու նաև ծխախոտի մշակումը. նրա գարնանավարը 1950 թվականին մեխանիզացիայի է ենթարկվելու 75 տոկոսով, նախացանքային մշակությունը 70 տոկոսով, սածիլումը՝ 30 տոկոսով, կուլտիվացիան՝ 60 տոկոսով և այլն։

Ճակնդեղի մշակությունը, որը Ռեսպուբ-



լիկայում վերջին տարիներս մեծ չափերով ընդարձակվում է, զգալիորեն կենթարկվի մեխանիզացիայի։ Գարնանավարի մեխանիզացիան 1940 թվականի 70 տոկոսից 1950 թվականին կհասնի 95 տոկոսի, բերքահավաքինը՝ 95 տոկոսի, իսկ ցրտահերկը արդեն 1947 թվականից ամբողջովին կենթարկվի մեխանիզացիայի։

Այսպիսով, նոր հնգամյակում գյուղատընտեսության մեջ տեխնիկական կուլտուրաները կմշակվեն մեծ մասամբ մեքենաների գործադրումով, իսկ որոշ աշխատանքներ մեխանիզացիայի են ենթարկվելու ամբողջապես։

Պարտիան և կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում նաև հացահատիկային կուլտուրաների մշակության մեխանիզացիային, որպես բերքատվության բարձրացման կարևորագույն միջոցի։

Հացահատիկային կուլտուրաների մեխանիզացիան նոր հնգամյակում ընդունելու է հետևյալ պատկերը։ Եթե 1940 թվականին հացահատիկային կուլտուրաների գարնանացանը մեխանիզացիայի էր ենթարկված միայն 10 տոկոսով, ապա 1950 թվականին գարնանացանի մեխանիզացիան կհասնի 30

տոկոսի, աշնանացանի մեխանիզացիան 20 տոկոսից կհասնի 40 տոկոսի, կոմբայնային բերքահավաքը կհասնի 15 տոկոսի, ցրտահերկի մեխանիզացիան՝ 70 տոկոսի։

Հացահատիկային կուլտուրաների մշակության մեխանիզացիան նոր հնգամյակում որոշ աշխատանքների գծով, 1940 թվականի հետ համեմատած համարյա թե կրկնապատկվելու է։

Նոր հնգամյակում ոչ միայն ուժեղացվում է մեքենատրակտորային կայանների գյուղատնտեսական մեքենաների պարկը, այլ և կազմակերպվում են նոր մեքենա-տրակտորային կայաններ։ 1946 թվականին Հայաստանում եղած 38 մեքենա-տրակտորային կայանի փոխարեն, 1950 թվականին ունենալու ենք 47 մեքենա-տրակտորային կայան։

1947 թվականին նոր մեքենա-տրակտորային կայաններ են կազմակերպվելու Էջմիածնում և Բասարգեչարում, 1948 թվականին— Գյառնիում և Աղինի շրջանում՝ Մարալիկում։

Հնգամյակի ընթացքում մի շարք մեքենա-տրակտորային կայաններ ենթարկվելու են էլեկտրիֆիկացիայի։ 1947 թվականին էլեկ-



տրիֆիկացման է ենթարկվելու 5 ՄՏ կայան, 1948 թվականին՝ 8 և 1949 թվականին՝ 9 ՄՏ կայան։

Պարտիան և կառավարությունը գյուղատնտեսության մեխանիզացիային զուգընթաց՝ լուրջ ուշադրություն են դարձնում գյուղատնտեսության բնագավառում աշխատող կադրերի պատրաստմանը և վերապատրաստմանը։

Օրեցօր աճող և մեխանիզացիայի ենթարկվող գյուղատնտեսությունը պահանջում է որակյալ կադրեր, որոնք պետք է լավ տիրապետեն նոր տեխնիկային և կարողանան առավելագույն օգնություն ցույց տալ գյուղատնտեսությանը՝ բերքատվության բարձրացման գործում։

Հնգամյակի ընթացքում զանազան դասընթացներում կպատրաստվեն ու կվերապատրաստվեն մոտ 3000 մեխանիկներ, տրակտորիստներ, կոմբայնավարներ, տրակտորային բրիգադավարներ։

Ստալինյան նոր հնգամյա պլանով նախատեսված գյուղատնտեսության մեխանիզացիան հնարավորություն կտա կենսագործելու այն մեծ խնդիրները, որ դրված են մեր գյուղատնտեսության առջև։

Հ. ՏՈՆՈՅԱՆ

## ԹԵՅ ԵՎ ՑԻՏՐՈՒՍՆԵՐ

Հետպատերազմյան Ստալինյան հնգամյա պլանի մեջ հատուկ տեղ է գրավում մեր երկրի գյուղատնտեսության վերականգնումն ու հետագա ավելի բուռն զարգացումը։

Մեր լայնածավալ սովետական Հայրենիքում, որը հյուսիսից հարավ փռված է մի քանի կլիմայական գոտիների վրա, մշակվում են ամեն տեսակի գյուղատնտեսական կուլտուրաներ, սկսած ցրտադիմացկուն հացահատիկներից մինչև մերձարևադարձային կուլտուրաները—թեյը, բուրումնավետ ցիտրուսները՝ կիտրոն, նարինջ, մանդարին, զանազան թանկարժեք տեխնիկական կուլտուրաները՝ էվկալիպտներ, խորդենի և այլն։

Սովետական Միության մեջ մերձարևադարձային կուլտուրաների գլխավոր հայրենիքը արևաշող Սովետական Վրաստանն է և հատկապես նրա արևմտյան մասը՝ Սևծովյան ափերը, որտեղ կլիման բացառիկ կեր-



պով նպաստավոր է մերձարևադարձային կուլտուրաների մշակման համար։

Մերձարևադարձային երկրագործության զարգացման համար բացառիկ նպաստավոր կլիմայական ու հողային պայմանները Վրաստանում դարերով մնում էին անօգտագործելի։ Միայն ցարական խոշոր պաշտոնյաների ու հարուստ կալվածատերերի ագարակներում կարելի էր հանդիպել հատ ու կենտ մերձարևադարձային բույսերի։ Իսկ գյուղացիական մանր հողամասերում մշակվում էր միայն եգիպտացորեն, որի խղճուկ բերքը գյուղացիներին հազիվ էր բավականացնում կիսաքաղց գոյություն պահպանելու համար։ Մերձարևադարձային գոտու տասնյակ հազարավոր հեկտար տարածությունները ծածկված էին անանցանելի ճահիճներով, վայրի բույսերով։

Վրաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո միայն հնարավոր դարձավ ճիշտ ու պլանավորված կերպով օգտագործել մերձարևադարձային շրջանների հսկայական տարածությունները, դրանք դարձնել իսկական ծաղկուն այգի։

Թեյ, կիտրոն, մանդարին, նարինջ, թունգ, ռամի, էվկալիպտներ, խորդենի,— ահա՛

մերձարևադարձային այն կուլտուրաների ոչ լրիվ ցանկը, որոնք ամուր հաստատվել են Սովետական Վրաստանում և մշակվում են արդյունաբերական մասշտաբներով։

### Թ Ե Յ

Մինչև ռևոլյուցիան, Վրաստանում թեյի պլանտացիաների ընդհանուր տարածությունը հասնում էր հազիվ 800—900 հեկտարի։ Թեյի բերքը վերամշակվում էր հասարակ եղանակով, տնայնագործական փոքրիկ ֆաբրիկայում, որը տարեկան արտադրում էր 100—120 հազար կիլոգրամ ցածրորակ թեյ։

Միայն սովետական իշխանություն հաստատվելուց հետո, և հատկապես 1931 թվականից սկսած, թեյի կուլտուրան Վրաստանում լայնորեն զարգացավ և ներկայումս դարձել է Վրաստանի գյուղատնտեսության հիմնական ու առաջատար ճյուղերից մեկը։

1931 թվականին ՀամԿ(բ)Պ Կենտկոմը և ընկեր Ստալինը Վրաստանի բոլշևիկների առջև խնդիր դրեցին՝ բավարարել Սովետական Միության թեյի պահանջը, թեյի սապարեզում մեր երկիրն անկախ դարձնել արտասահմանից։



Վրաստանի կոլխոզային գյուղացիությունը հսկայական աշխատանք կատարեց այդ պատվավոր խնդիրը կենսագործելու համար։ Ամայի հողերի հսկայական տարածություններ ցամաքեցվեցին և վերածվեցին թեյի ընդարձակ պլանտացիաների։ Թեյի կուլտուրայի արմատավորումը փոխեց Արևմտյան Վրաստանի շրջանների էկոնոմիկան։ Թեյը դարձավ կոլխոզային գյուղացիության բարեկեցության, նրա ունևոր և կուլտուրական կյանքի աղբյուրը։

Թեյի պլանտացիաները, որ 1921 թվականին հազար հեկտարից մի փոքր ավելի տարածություն էին գրավում, 1931 թվականին արդեն հասան ավելի քան 16 հազար հեկտարի, իսկ 1940 թվականին թեյի պլանտացիաների տարածությունն արդեն 50 հազար հեկտարից ավելի էր։

Պլանտացիաների տարածությանը զուգընթաց աճեց նաև թեյի տերևի բերքատվությունը։ Պլանտացիաների ընդարձակումը և բերքատվության բարձրացումն ապահովեցին թեյատերևի համախառն քանակության անշեղ աճումը տարեց-տարի, ըստ որում

զգալիորեն աճեց թեյի բարձր սորտերի տեսակարար կշիռը թեյատերևի համախառն բերքի մեջ։

Վրաստանի կոլխոզային գյուղացիությունը լուրջ աշխատանք է կատարել գյուղատնտեսության մեջ պատերազմի հետևանքները վերացնելու ուղղությամբ։ 1946 թվականին թեյի կանաչ տերևի հավաքման տարեկան պլանը կատարվեց 118 տոկոսով։ Անցյալ տարի թեյի ֆաբրիկաներին հանձնվեց մոտ 24 միլիոն կիլոգրամ թեյի կանաչ տերև, պլանով նախատեսված 20 միլիոն կիլոգրամի փոխարեն։ Սովետական Վրաստանի թեյագործությունը իր գոյության ամբողջ ժամանակամիջոցում չէր ունեցել այսպիսի որակական ցուցանիշներ։ Անցյալ տարի հանձնվել է միայն առաջին ու երկրորդ տեսակի թեյ, ընդ որում առաջին տեսակի թեյ 21 միլիոն կիլոգրամից ավելի։

Թեյի կուլտուրայի զարգացումը Վրաստանում պայմանավորեց թեյատերևի վերամշակման արդյունաբերության նոր ճյուղի ստեղծումը։ Վրաստանում ներկայումս կան տասնյակ թեյի ֆաբրիկաներ, սարքավորված տեխնիկայի վերջին խոսքով, ընդ որում թեյամշակման մեքենաներն էլ պատ-



րաստվում են հենց Վրաստանի մեքենաշինական գործարաններում։

Թեյի ֆաբրիկաներում թեյի տերևը անցնում է վերամշակման մի շարք բարդ պրոցեսներ, այնուհետև պատրաստի թեյը հատուկ ֆաբրիկաներում փաթեթվում է և ուղարկվում սպառման համար։

Թեյի պլանտացիաների ընդարձակման և թեյի տերևի բերքի աճման կապակցությամբ Վրաստանում կառուցվում են թեյի նոր ֆաբրիկաներ, որոնք անընդհատ կատարելագործում են իրենց աշխատանքը, բարելավելով արտադրանքի որակը։

Սովետական թեյը արժանացել է մեծ սպառողի բարձր գնահատականին։ Թեյի արտադրությունը տարեց-տարի աճում է։ Թեյագործ կոլխոզնիկները և թեյագործական սովխոզների բանվորները պայքարում են Ստալինյան նոր հնգամյակում առաջադրված խնդիրները պատվով կատարելու, երկրին ավելի շատ ու ավելի լավորակ թեյ տալու համար։

ՑԻՏՐՈՒՍՆԵՐ

Անուշահամ, հյութեղ մանդարինների, բուրումնավետ նարինջների, վիտամիններով հարուստ կիտրոնների և այլ զանազան ցիտ-

իուսների, որոնք աճում են Սովետական Վրաստանի պլանտացիաներում, կարելի է հանդիպել մեր լայնածավալ Հայրենիքի բոլոր անկյուններում։

Ցիտրուսային կուլտուրաները Վրաստանի համար նորություն չեն։ Սևծովյան ափերին դրանք աճում են դեռ շատ վաղ ժամանակներից։ Սակայն անցյալում դրանց կարելի էր հանդիպել միայն մեծատունների ագարակներում և իշխանների ամառանոցներում։ Այդ ցիտրուսային, առանձին տունկերի ընդհանուր տարածությունը 300 հեկտարից ավելի չէր։ Պարզ է, որ դրանք այն ժամանակ որևէ արդյունաբերական նշանակություն ունենալ չէին կարող։ Անենք հնում հազիվ թե կարիք էլ կար արդյունաբերական մասշտաբներով զարգացնելու այդ կուլտուրան։ Ցիտրուսային կուլտուրաների պահանջն այն ժամանակ մեծ չէր—աշխատավորների համար այն անմատչելի շքեղություն էր։ Մանդարինները, կիտրոններն ու նարինջները մատչելի էին միայն ունևոր դասակարգերի համար և ներմուծվում էին գերազանցապես արտասահմանից։

Վրաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո, գյուղատնտեսության



զարգացման ճիշտ գիծը որոշելու և բնական հարստությունների առավելագույն օգտագործման շնորհիվ, հետևելով մեծ առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ցուցումներին, Վրաստանի աշխատավորները իրենց Ռեսպուբլիկան դարձրեցին ամբողջ Սովետական Միության ամենաարժեքավոր ցիտրուսային կուլտուրաներ մատակարարող հիմնական բազան։ Ստալինյան հնգամյակները եղան Վրաստանում ցիտրուսային պլանտացիաների լայն զարգացման տարիներ։

Արդեն անցյալ տարի Վրաստանի մերձարևադարձային շրջանների կոլխոզները, կոլխոզնիկներն ու սովխոզները պետությանը հանձնեցին ավելի քան 500 միլիոն ցիտրուսային պտուղ։

Ցիտրուսային պտուղների բերքը տարեց-տարի աճում է։ Ստալինյան նոր հնգամյակում Սովետական Վրաստանում պետք է տնկվեն նարինջի, կիտրոնի, մանդարինի 11 հազար հեկտար նոր պլանտացիաներ։

Ցիտրուսները՝ մանդարինը, նարինջը, կիտրոնը և այլն, դարձել են մեր Հայրենիքի աշխատավորների լայն սպառման պտուղներ։

Ս. ԽՈՍՐՈՎՅԱՆ

## ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

# Ի՞ՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԲԱՐՁՐԱՁԱՅՆ ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Այն գրույցներին զուգընթաց, որ մեր ագիտատորներն անց են կացնում ձեռնարկություններում և կոլխոզներում, ագիտացիոն-մասսայական աշխատանքի մեջ կարևոր տեղ է գրավում նաև թերթերի, ժուռնալների և այլ գրականության կոլեկտիվ բարձրաձայն ընթերցանությունը։*

*Թերթերը և ժուռնալների բարձրաձայն ընթերցանությունը քաղաքական աշխատանքի կարևոր մի օղակն է։ Դեռ 1935 թվականին ՀամԿ(բ)Պ Կենտկոմը «Բալախնայի Ձերժինսկու անվան ցելյուլոզի-թղթի կոմբինատում քաղաքական ագիտացիայի վիճակի մասին» իր որոշման մեջ պարտավորեցրեց ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանքի համար օգտագործել հերթափոխությունների միջև եղած ազատ ժամանակն ու նախաճաշի ընդմիջումները, կի-*



*րառել բարձրաձայն ընթերցանությունը հանրակացարաններում, բանվորների բնակարաններում՝ բանվորների ցանկությամբ։*

*Թերթերի և բրոշյուրների կոլեկտիվ բարձրաձայն ընթերցանությանը մեծ նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը։ Նա մատնանշում էր, որ աշխատավորների մեջ կատարվող քաղաքական-բացատրական աշխատանքի այդ մասսայական ձևին պետք է վերաբերվել չափազանց լուրջ ու մտածված կերպով։*

*Ճիշտ և կանոնավոր կազմակերպվող բարձրաձայն ընթերցանությունը հնարավորություն է տալիս աշխատավորներին միշտ տեղյակ պահել քաղաքական իրադարձություններին, նրանց սիստեմատիկաբար ծանոթացնել ընթացիկ քաղաքականության հարցերի և միջազգային դրության հետ։*

*Բայց ինչպես ցույց է տալիս պրակտիկան, բարձրաձայն ընթերցանությունների կազմակերպմանը ամենուրեք չէ, որ հարկ եղած ուշադրություն է նվիրվում։ Շատ հաճախ թերթերի և ժուռնալների բարձրաձայն ընթերցանությունը հանձնարարվում է քաղաքականապես քիչ պատրաստված ու ոչ բավականաչափ գրագետ ընկերների։ Ագի-*

տատորներից ոմանք սխալ կերպով այն կարծիքին են, թե թերթերի և ժուռնալների բարձրաձայն ընթերցանությունը բավական հեշտ ու հասարակ գործ է, և այդ պատճառով էլ հաճախ բարձրաձայն ընթերցանությանը ձեռնամուխ են լինում նույնիսկ նախօրոք չծանոթանալով ընթերցվելիք նյութի բովանդակությանը։

Թերթերի և ժուռնալների բարձրաձայն ընթերցանությունը պետք է հանձնարարել այնպիսի ընկերների, որոնք ունեն ագիտացիոն աշխատանքի որոշ փորձ, կարող են ճիշտ ու լավ կարդալ թերթերը և հետաքրքրություն առաջացնել ունկնդիրների մեջ։

Բարձրաձայն ընթերցանության ժամանակ կարևոր նշանակություն ունի ընթերցման ձևը, շնորհքը—պետք է կարդալ գեղեցիկ, սահուն, ճիշտ առոգանությամբ։ Միևնույն նյութը կարելի է կարդալ զանազան ձևով, այնպես, որ նա կարող է տարբեր տպավորություն գործել ունկնդիրների վրա։ Ուկրաինայի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումում 1944 թվականին «Մասսայական-քաղաքական աշխատանքի մասին» իր ճառի մեջ ընկ. Ն. Խրուշչևն այդ առթիվ բերեց հետևյալ ցայտուն օրինակը.



— Դոնբասում,— ասաց նա,— մի ժամանակ տարածված էր այսպիսի մի պատմություն։ Հայրը նամակ էր ստացել իր հանքափոր որդուց։ Ծերունին անգրագետ էր, ուստի գնաց իր հարևանի մոտ, խնդրեց, որ նա կարդա նամակը։ Որդին գրում էր հորը, թե իրեն դժբախտություն է պատահել, և խնդրում էր 50 ռուբլի փող ուղարկել։ Հարևանը նամակն այնպիսի ձևով կարդաց, որ թվաց թե որդին հորից փող է պահանջում։ Լսելով ընթերցողին, ծերունին զայրացավ ու սկսեց նախատել որդուն, որ նա փոխանակ հորն օգնելու, դեռ նրանից է փող պահանջում։ Անցավ մեկ շաբաթ։ Ծերունին հիշեց որդու նամակը, և այս անգամ գնաց մեկ ուրիշ հարևանի մոտ, թե՝ «Իվան Պետրովիչ, կարդա այս նամակը, Ալեքսեյն է գրել»։

Այս հարևանը նամակը կարդաց բոլորովին ուրիշ ձևով, այնպես, որ ծերունին նույնիսկ արտասվեց ու ասաց. «Երևի տղային մի դժբախտություն է պատահել, հարկավոր է օգնել»։ Եվ ապա հիշելով մեկ շաբաթ առաջվա իր զայրույթը, նա ավելացրեց. «Այդպես էլ հարկավոր էր գրել, իսկ ինքը պահանջո՞ւմ էր»։ Բայց դա նույն

նամակն էր, միայն տարբեր ձևով ընթերց-
ված։

Բարձրաձայն ընթերցանությունը առավե-
լագույն հաջողություն կունենա միայն այն
դեպքում, եթե այն խնամքով նախապատ-
րաստված է։ Դրա համար ընթերցարար-ա-
գիտատորը պետք է վաղօրոք մտածի, թե
ի՞նչ նյութ է հարկավոր ընտրել ընթերցա-
նության համար, պետք է կարողանա որո-
շել, թե ի՞նչն է այսօր կարևոր տվյալ աուդի-
տորիայի համար։

Ընթերցանության նյութն ընտրելիս պետք
է նաև հաշվի առնել ընթերցման համար պա-
հանջվող ժամանակամիջոցը։ Երկար ընթեր-
ցանությունները կձանձրացնեն ունկնդիրնե-
րին։

Երբ բարձրաձայն ընթերցանության նյութն
արդեն ընտրված է, անհրաժեշտ է, որ ըն-
թերցարար-ագիտատորը լավ ծանոթանա
ընթերցվելիք լրագրային կամ ժուռնալային
նյութի բովանդակությանը, նշի այն կարե-
վոր հարցերը, որոնք հատուկ պարզաբան-
ման կարիք ունեն։

Բարձրաձայն ընթերցանության նյութի
ընտրությունը և հենց ընթերցանությունը
պետք է այնպես կազմակերպել, որ դա



ունկնդիրներին մոբիլիզացիայի ենթարկի
պայքարելու տվյալ ձեռնարկության ու կոլ-
խոզի կոլեկտիվի առջև կանգնած կոնկրետ
խնդիրների կատարման համար։

Բարձրաձայն ընթերցանությունը պետք է
այնպես անցկացնել, որ նա ունկնդիրների
մեջ աշխուժություն առաջացնի։ Լրագրային
կամ ժուռնալային հոդվածի ամեն մի ըն-
թերցանություն և առհասարակ բարձրաձայն
ընթերցանությունը պետք է առիթ ծառայի
աշխույժ զրույցի համար, որը ընթերցարար-
ագիտատորը պետք է կարողանա հմտորեն
կազմակերպել։

Մ. Ի. Կալինինը 1942 թվականի ապրիլի
21-ին Մոսկվայում պարտիական աշխա-
տողների խորհրդակցությանն ունեցած իր
ելույթի մեջ լավ խորհուրդ տվեց ագիտա-
տորներին, թե ինչպես կարելի է աշխույժ
դարձնել բարձրաձայն ընթերցանությունը։

— Մի քառասուն տարի սրանից առաջ,—
պատմում է ընկ. Կալինինը,— ինքս էլ ըն-
թերցարար էի։ Իմ անլեգալ խմբակում 15
մարդ կար։ Եթե ես միայն կարդայի, ապա
դրանից արդյունք չէր ստացվի։ Բուն ըն-
թերցանությունը այն ժամանակ խլում էր

Գինը 1 Ռ.

միայն 15—20 րոպե, իսկ այնուհետև սկըսվում էր քննարկումը։ Ես հարց էի տալիս, թե «Ինչպե՞ս է, հասկացա՞ք այս-այս բանը»։ —«Ոչ, չհասկացանք»։— «Դե, եկեք պարզաբանենք»։ Եվ սկսվում էր աշխույժ զրույց։ Եթե զրուցարար-ընթերցարարը չի կարողանում հետաքրքրություն առաջացնել ունկնդիրների մեջ, իսկ ունկնդիրները գիտեն, որ նա վաղօրոք ընթերցանության համար չի նախապատրաստվել, էլ ի՞նչ մտքերի փոխանակություն կարող է ծագել,—եզրակացնում է ընկ. Կալինինը։

Բարձրաձայն ընթերցանությունը ագիտացիոն-մասսայական աշխատանքի կարևոր մի բնագավառն է և այդ պատճառով էլ ագիտ-կոլեկտիվների ղեկավարներն ու ագիտատորները պետք է լուրջ ուշադրություն նվիրեն դրան։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

Պատ. խմբագիր՝ Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 02507. Պատվեր 990. Տիրաժ 9.600

Ստորագրված է տպագրության 26/VII 1947 թ.

Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агит. ЦК КП(б) Армении

Блокнот Агитатора